դարանի կազմակերպիչներէն մէկը հանդիսանա- լով, կ՚աշխատի գիտութիւնը ժողովրդականացնել լայն զանգուածներուն մէջ։

Արուեստագէտ քարտաշները հին վարպետնե- րու արուեստը կը վերակենդանացնեն, քարը վերա- ծելով խաղողի ողկոյզի, որպէս երգ հնչող հայկա- կան քանդակի։Եւ զարդարելով պալատները,թատ- րոնները, աշխատանոցները, գործարանները եւ բնակարանները, քարերը կ՚երգեն ազատագրուած եւ ոգեւորուած աշխատանքի մասին։

ԹԻՖԼԻՍԻ մէջ հրատարակուած է վրացի բա- նաստեղծ Ն. Բարադաշվիլիի բանաստեղծութեանց հայերէն թարգմանութիւնը, զոր կատարած է բա- նաստեղծ Սուրէն Աւչեան։ Գիրքը խմբագրած է ու- սուցչապետ Լ. Մելիքսէթ-Բէկ։

## Գերմանական դաշնագիրը եւ ուրիշ խնդիրներ

Գերմանական հարցին առթիւ, որ պիտի քըն- նուի Մարտ 10ին, Մոսկուայի մէջ, Միացեալ Ազ- գերու Ֆրանսական պատուիրակը նշանակալից ճառ մը խօսեցաւ Նիւ Եորքի մէջ։ Ազդարարեց թէ կեդ- րոնացեալ Գերմանիա մը կամ 80—90 տարիէ ի վեր եղած պայմանները եթէ վերահաստատուին, հետե- ւանքը պիտի ըլլայ նոր պատերազմ մը։ Ուստի յայտարարեց թէ երբ գերմանական դաշնագիրը խմբագրուի, Ֆրանսա վճռապէս պիտի ընդդիմա- նայ որ Դաշնակիցները զօրեղապէս կազմակեր- պուած կեդրոնական կարգուսարք մը հաստատեն Գերմանիոյ մէջ։ Յետոյ առաջարկեց որ Գերմա- նիոյ սահմանակից փոքր ազգերն ալ մասնակցին բանակցութեանց։

★ Մոսկուայի խորհրդաժողովէն առաջ, Չորս Մեծերու փոխանորդները նստ պիտի գումարեն Լոնտոնի մէջ, Յունուար 14ին, օրակարգի խնդիր- ները ուսումնասիրելու համար։ Չորսերու Խոր- հուրդը գերմանական հարցին քննութիւնը պիտի կատարէ համաձայն կանխորոշ ծրագրի մը, եւ պիտի մշակէ հաշտութեան դաշնագիրը։ Այս առ- թիւ պիտի քննէ նաեւ ամերիկեան ծրագիրը, որ կը տրամադրէ Գերմանիոյ զինաթափութիւնը շարու- նակել 25—40 տարի։ Վիճաբանութեանց ատեն, Պ. Մոլոթով ընդդիմացաւ Զինաստանի մասնակ- ցութեան, դիտել տալով թէ ան չէ ստորագրած Գերմանիոյ զինադադարը։

★ Միացեալ Ազգերու յատուկ յանձնախումբը վաւերացուց սպառազինութեանց կրճատման ծրա- գիրը, երկու բարեփոխումներով։ Կը կարծուի թէ կարելի պիտի ըլլայ վերջնական համաձայնու- թեան մը յանգիլ։

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՏՐՊԱՏԱԿԱՆԷՆ (Իրան) հասած վերջին լու- րերու համաձայն, կառավարական զօրքը խստօրէն կը հետապնդէ ըմբոստները։ Զօր. Հաշէմի ձերբակալեց երեք Ռուսեր, երկուքը այր, մէկը կին, որոնք ամբաստանուած են թէ գաղտնի անթել մը կը բանեցնէին։ Մեծ քանակութեամբ հրացան- ներ, ռազմանիւթ, ընդացիրներ, ձեռնառումբեր եւ քարիւղ բռնուած են Թաւրիզի մէջ։ Թէհրանի ամերիկեան դեսպանը յայտարարեց թէ Իրանի դե- րիշխանութեան հաստատումը երկրին բոլոր մա- սերուն մէջ յաղթանակ մըն է Միացեալ Ազգերուն համար։— «Իմանիթէ» կը գրէ թէ Ատրպատակա- նի գրաւումէն վերջ բազմաթիւ բանուորներ ձեր- բակալուած եւ դատի յանձնուած են, բոլոր ձա- խակողմեան թերթերը խափանուած, իսկ հայրե- նասէրները լեռները բարձրանալով, կը շարունա- կեն կռիւը։ Պաշարման վիճակ յայտարարուեցաւ Թաւրիզի մէջ։

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ԴԷՊՔԵՐՈՒՆ ԱՌԹԻԻ, Պուլկա- րիոյ արտաքին նախարարը հերքեց այն լուրերը թէ հրոսախումբեր մարզուելով հարեւան երկիրը կը ղրկուին, խռովութիւններ յարուցանելու հա- մար։ Այս առթիւ ըսաւ թէ 1945ին, Յունաստանի քաղաքացիական կռիւներուն ատեն 10.000 փա- խստականներ Պուլկարիա ապաստանեցան։— Աթէն- քէն կը հեռագրեն թէ Բ. զօրաբանակը յաջողեցաւ ետ առնել երեք աւաններ Լարիսայի շրջանին մէջ։ Կռիւները կը շարունակուին Ոլիմպոս լերան շըր- ջակաները եւ Սելանիկի արեւմտեան կողմը։

ՊՈԼՍՈՑ Թրքական, յունական եւ պուլկարա- կան շրջանակները կը հերքեն այն զրոյցները թէ 1500 Պուլկարներ եւ Սերպեր աքսորուած են Թուրքիայէն։

ՍՈՒՐԻՈՅ թերթերը կը մերժեն որ եւ է գոր- ծակցութիւն հաստատել Թուրքիոյ հետ, Միջին Ա- րեւելքի մէջ։ «Մենք կ՚ուզենք պահել մեր կատար- եալ անկախութիւնը», կ՚ըսէ կարեւոր թերթ մը։

ՀՆԴԿԱՍՏԱՆԻ ԾԱՆՐ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ուշա- դրութեան յանձնելով երեսփ. ժողովին մէջ, Զըր- չիլ ազդարարեց թէ հետեւանքը պիտի ըլլայ քա- ղաքացիական պատերազմ, քանի որ Հնդիկները եւ Իսլամները իրար չեն հասկնար։— Միացեալ Ազ- գերու հնդիկ պատուիրակը ճառ մը խօսելով, յայ- տարարեց թէ յաջորդ պատերազմը պիտի պայթի Արեւելքի մէջ, եթէ ցեղային խտրութիւն հաս- տատուի կամ գաղթային պետութիւնները յամա- ռին ամուր պահել իրենց ստացուածքները։

ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՒ Փարիզի առաջին գերման կառավարիչը, զօր. Շթուլփնակըլ, Գերմանիոյ ֆրանսական իշխանութեան կողմէ։ Զօրավարը կը փնտռուէր երկար ատենէ ի վեր, իբրեւ պատե- րազմի ոճրագործ, քանի որ իր հրամանով կատար- ուեցան պատանդներու առաջին գնդակահարու- թիւնները։

ՄԻԱՑԵԱԼ ԱԶԳԵՐՈՒ ընդհ. ժողովը 6ի դէմ 34 ձայնով քուէարկեց բանաձեւ մը, որուն հա- մաձայն ետ պիտի կանչուին Մատրիտի դեսպան- ները։ Սպանիոյ խորհրդարանն ալ բանաձեւ մը քուէարկեց, որով կը պախարակէ օտար միջա- մտութիւնը ներքին գործերու մէջ եւ կը վերահաս- տատէ իր հաւատարմութիւնը զօր. Ֆրանքոյի։

ԳԵՐՄԱՆ ԲԺԻՇԿՆԵՐՈՒ դատավարութիւնը կըշարունակուի Նիւրընպէրկի մէջ։ Լեհ քահանայ մը, Միխալովսկի, որ բանտարկուած էր Տախ- աուի մէջ, 1700 կալանաւորներու հետ, վկայեց թէ 900 քահանաներ մեռան անօթութենէ եւ խոշտան- գումներէ։ 1942 հոկտ. 5ին SSները Միխալովսկին կը նետեն երկու մեթր խորութեամբ աւազանի մը մէջ, ուր սառոյցի կտորներ լեցուած էին։ Քահա- նան կը նուաղի մէկ ժամ վերջը։ «Երբ դուրս հա- նեցին սառուցեալ ջուրէն, սրունքներս եւ թեւերս երկաթի կը նմանէին եւ երկու շաբաթ մնացի հի- ւանդանոցը»։ Երեք-չորս հարիւր հոգի մեռած են այս «գիտական» փորձերուն հետեւանքով։ Հոլան- տուհի մըն ալ վկայեց թէ սպիտակ փոշի մը կը ներարկէին ողջերուն որոնք ամբողջ գիշերը քնա- նալէ վերջ, կը մեռնէին յաջորդ կէսօրին։

ՍՈՒՐԻԱ ԵՒ ԼԻԲԱՆԱՆ կը բանակցին, Ֆրան- քին փոխարէն ուրիշ դրամ մը հիմ բռնելու հա- մար, նկատելով որ ներկայ դրութեամբ չի կրնար բարուօքիլ իրենց առեւտուրը Թուրքիոյ հետ։

ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ ԿԱՆ որոնք պարտք ունին եր- կար ատենէ ի վեր։

Կը խնդրենք մասնաւոր նամակի չսպասել եւ հաշիւները փակել մինչեւ տարեգլուխ։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԷՆ ՇԱՄՈՆ.— Հ. Ց. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբի ընկերական ժողովը, 17 Դեկ- տեմբեր երեքշաբթի իրիկուն ժամը 8ին, սովորա- կան վայրը։

### ԱՌ ՈՐ ԱՆԿ Է

Կը խնդրուի օր առաջ ղրկել ժողովներու ազդե- րը։ «Յառաջ»ի թաղամասին մէջ ելեկտրական հո- սանքը չի բանիր ուրբաթ եւ շաբաթ, այնպէս որ Եշ. եւ ուրբաթ հասած ազդերը նպատակի չեն ծա- ռայեր։ Նոյնպէս թղթակցութիւնները։



Le Gérant : L. KRIKORIAN
Imprimerie DER-AGOPIAN, 17 Rue Damesme - 13e

